# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ, ԹԻՒ 9 — ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. — ՍԵՊՏԵՄԲԵՐ 1918 — ՏԱՍԸ ՍԵՆԹ


ԱՌԱՋՆՈՐԴՈՂ

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ

Մեր եկեղեցւոյ բարեկարգութեան խնդիրը վերջին տասնեակ մը տարիներու ընթացքին բաւական շատ խօսիլ տուած է իր վրայ։ Այդ նպատակաւ շարժում մը աւելի Պոլսոյ մէջ տեղի ունեցած է, բայց քաղաքական լուրջ պատճառներ միշտ արգելք եղած են ու կըլլան ցարդ գործնական քայլ մը առնելու։ Մեր Կաթողիկոսներէն երջանկայիշատակ Մկրտիչ Խրիմեան Հայրիկ ամենէն աւելի ազատ կերպով արտայայտուեցաւ այլխացեալ քահանայից վերամուսնութեան խնդրով, բայց նա ալ պատեհութիւն չունեցաւ պաշտօնական ձեռնարկ մ՚ընելու։ Մինչդեռ արդի դժբաղդ Հայրապետը յոյժ կարեւոր յիշատակ մը թողած եղաւ այնքան խստօրէն սեղմուած պահքի օրերը ըստ բաւականի ընդարձակելով։

Երբ ներկայ աշխարհաւեր պատերազմները վերջանան, եւ մշտական խաղաղութեան եւ մարդկային համեղբայրութեան ցանկալի դարաշրջանը սկսի, ու ըլլայ երկին նոր եւ երկիր նոր, ամեն ազգ ու ամեն ցեղ իր սեփական հողին վրայ արդար եւ անկողոպտելի կառավարութեամբ մը օժտուած՝ խաղաղ ու արդիւնաւէտ աշխատանքի սուրբ գործն սկսի, այն ատեն մենք ալ մեր ազգային վերածնութեան հետ անշուշտ պիտի ունենանք մեր վերածնեալ եկեղեցին։

Ամերիկահայ Եկեղեցին, միջավայրի զօրեղ ազդեցութեամբ, ինքնին սկսած է արդէն նուազագոյն կողմերով փոփոխութեան ենթարկուիլ։ Հոս եկեղեցիներու մէջ չի կան քշոցներ ու ծնծղաներ։ Եկեղեցականաց տարազը փոխուած է Եկեղեցիէն դուրս։ Շաբթու մէջ առաւօտ երեկոյ ժամերգութիւն չի կատարուիր։ Որուն հետեւանքը եղած է Սրբոց նուիրուած պաշտամունքին դադրիլը։ Մեծ պահքը արդէն կորուսած է իր նիւթական ըմբռնումը եւ շաբաթապահքերէն ժողովուրդը շատ անգամ բնաւ լուր չունի։ Ընդունուած է երգեհոնի գործածութիւնը, եւ աղջիկները դպրութեան պաշտօն կը վարեն։

Այսոնք Եկեղեցական բարեկարգութեան իրական մասերը չեն կազմեր անշուշտ, բայց մենք մատնանիշ կընենք իբրեւ իրողութիւններ։

Մենք այս առթիւ քանի մը խօսք կուզենք ըսել այն «Ժամագիրք-Աղօթագիրք»ի մասին որ կ՚ուզէ տպագրել մեր Կրօնական Ժողովը, ինչպէս կը տեղեկանանք ներկայ թիւով հրատարակուած Կեդրոնական Վարչութեան որոշումներէն։

Ժամագիրք անունը շատ հին է եւ շատ պատշաճ։ Հարկ չի կայ անոր վրայ Աղօթագիրք երկրորդ անուն մը եւս բարդելու։

Ամերիկայի մէջ մենք սովոր ենք Կիրակի առաւօտները միայն պաշտամունք կատարելու։ Կան տեղեր՝ ուր պատարագ միայն կը մատուցուի. այնպէս որ ոչ միայն ժողովուրդը, այլ եւ մատի վրայ համրուած դպիրներն ալ սկսած են խորթանալ ժամերգութեան հետ, որ այնքան վայելուչ դասաւորուած է եւ ունի «Յիշեսցուք»ի, «Առաւօտ Լուսոյ»ի, «Արփիներու», «Փառք ի բարձունս»ի եւ «Նորաստեղծեալ»ի նման հոգեզրաւ ու սրտայոյզ երգեր։ Այսոնք ամենն ալ դոց գիտէր հետզհետէ

եկեղեցիէն դառնալիք ըլլալու վտանգին տակ գըտնուող այս ժամանակի ժողովուրդը։ Այն ի՞նչ հրաշալի երգ է «Փա՛ռք յարութեան քո Տէր, ո՛չ դադարեցայց Յիսուս, գովել զքեզ զամենայն աւուրս կենդանութեան իմոյ»։ Նորափթիթ գիլ ձայնով մանուկներէն սկսեալ մինչև բամբ ձայնով չափահասները, տիրացուները, Եկեղեցիներու կամարները կը թնդացնէին մեր երկիրը։ Ժամը տասնի առեններ երբ այդ ցնծուներգը կ՚երգուէր, տակաւին հազիւ իրենց պրէքֆըսթի սեղանին շուրջը բոլորուած կըլլան, ձմեռուան ձիւնին ու փուքին գիշերանց, ամառուան զով արշալոյսին կանո՛ւխ կանուխ ծոմ բերնով եկեղեցի փութացող երբեմնի մեր պաշտօնասէր ժողովուրդը։ Ու ասոր քով բաղդատութեան դիր Երկուշաբթի առաւօտեան փութկոտութիւնը դէպի շուկայ, դէպի գործատեղին, «Զայս արժան էր առնել, և զայն չթողուլ։»

Իսկ տեղեր ալ կան, ուր ժամերգութիւն և պատարագ միանգամայն կըլլան. բայց ժամերգութեան առեն եկեղեցին թափուր է դարձեալ։ Տեղ տեղ Կիրակնօրեայ դպրոց ալ ունինք, ինչպէս ի Ֆրէզնօ, որոյ դասընթացքը տեղի կունենայ ժամերգութեան պահուն։

Այն տեղերը ուր սեփական եկեղեցի և կանոնաւոր ժամասացութիւն կայ, անբանաւոր և պատշաճութեան հակառակ չպիտի ըլլայ, սա կերպ փոփոխութիւն մը ներմուծել (*)։

Կիրակնօրեայ դպրոցները այնպէս մը կազմակերպել, որ աւելի շատ թուով ժողովուրդ գտնուի հոն, իբրև ունկնդիր, յարգելով ամեն կարգ ու կանոն։

Աշակերտներ,, ուսուցիչներ, դպրաց դասու անդամք իրենց դպրապետով, նոյն իսկ եկեղեցւոյ հովիւը՝ եթէ բանաւոր արգելք մը չունի, օժանդակ ըլլալով միմիանց, այն տեղի պարտականութիւնը վերջացնելէ զկնի, նոյն բազմութեամբ երթան եկեղեցի և սկսին ժամերգութիւնը որոշեալ ժամուն, որ առեն ժողովուրդն ալ եկած կըլլայ։ Պատարագ եղած օրը ժամերգութիւն չկատարուի, ինչպէս նաև ժամերգութիւն եղած օրն ալ պատարագ չի մատուցուի, պարբերաբար։ Տօնական օրերը դէթ բացառութիւն համարուելու են։

Այսպէսով մեծեր ու փոքրեր, առ հասարակ, նախ լաւ, և ապա լաւագոյն վարժութիւն պիտի ունենան Եկեղեցական ընդհանուր կարգ ու կանոններուն և սովորութիւններուն նկատմամբ ու պիտի յարատեւեն սիրայօժար և անձանձրոյթ։ Մեր պզտիկները դրան առջև չպիտի դրօնուն, պատանիները օթոմոպիլներու մէջ չպիտի ընկողմանին, չափահասներ հօն խռնուելով չպիտի ծըխեն չաղակրատեն։ Անշուշտ ներելի է յետ աւարտման սիրալիր տեսակցութիւն բարեկամներու և ծանօթներու հետ։ Այսպէսով պաշտամունքը, սկիզբէն ցվերջ, կատարեալ և հաւաքական միձոյլ աղօթքի նուիրուած պիտի ըլլայ, միասին սկսելով ու միատեղ վերջացնելով։

Գալով «Ժամագիրք»ի տպագրութեան, անշուշտ նոր երգեր ու աղօթքներ չի պիտի հեղինակուին, և ոչ ալ նոր կարգեր պիտի սահմանուին. Եղածը ինքնին՝ պատրաստուած շնորհալի Հայրապետներէ ու սրբակեաց վարդապետներէ՝ անըրման է և անփոփոխելի։ Այնպէս դասաւորելու է, որ տարուան բոլոր Կիրակիներու և նոյնպէս նըշանաւոր օրերու ամունքները պարունակուին,։ Եթէ հատորը շատ խոշոր կըլլայ, երկուքի վերածելու է զայն։ Ազդարար ծանօթութիւններով զգացնելու է կայնելու, նստելու և խորին պատկառանք պահելու ժամանակները։

Վերջացնելէ առաջ կարեւոր կը նկատենք նաև ըսել, որ Սուրբ Հաղորդութեան մերձենալու ամենաբարի պարտականութիւնը, որ Քրիստոնէութեան էական և անդանցանելի պարտականութիւններէն մին է, արծարծուի ժողովուրդին մէջ։ Մեր ցանցառ մտաւորականները, բժիշկ, փաստաբան, խմբագիր, հրապարակագիր, և ինքզինքնին զարգացած կարծողներէն բազումք, եկեղեցի չեն յաճախեր, և այդպիսիները այս տողերն ալ կարդալու չեն գիջանիր. և եթէ դիպուածով մը կարդան իսկ, հեգնանքի քմծիծաղով մը մէկդի կը շպրտեն։ Համակրական ցաւակցութիւն միայն ունինք այդպիսիներուն համար։

Չի մոռնանք նաև ըսել որ «Ժամագիրք»ի հըրատարակութիւնը փութացնելու է, նոյն իսկ եթէ պարտքով ըլլայ։ Չեմ գիտեր թէ որչափ գործնական կըլլայ եթէ բաժանորդագրութիւն բացուի։ Սակայն ես վստահ եմ թէ մենք անիկա սպառող ժողովուրդ ունինք. «Եօթն հազար արանց, որոց ոչ իցէ կրկնեալ ծունր Բահաղու»։ Միայն թէ լաւ տպագրութիւն և լաւ կազմ ունենալու է։




(*) Ամենէն առաջ եկեղեցագիտական գիշերային դասընթացք մը հաստատել, տեղական պայմաններու համաձայն, ուր եկեղեցւոյ մէջ կարդացուելիք ու երգուելիք նիւթերուն և այլ կարեւոր գիտելեաց ընտելացնել ժողովուրդը։

## ՍՐԱՊԻՈՆ Վ. ՄԵԼՔՈՆԵԱՆ

* * *

Սրապիոն Վ. Մելքոնեան, որ յետ կարճատեւ հիւանդութեան ի Տէր հանգեաւ, 59 տարեկան հասակին մէջ, անցեալ ամսոյ 29ին, ի խոր սուգ համակեց ոչ միայն իր ընտանեկան պարագաները,



Սրապիոն Վ. Մելքոնեան

այլ և ամբողջ իր մերձաւոր և հեռաւոր ծանօթները: Վասն զի Նա լաւ Հայ մըն էր, ինչպէս նաև տիպար ամուսին մը և բարի հայր մը, անկեղծ հաւատացեալ մը և ամենուն սիրելի բարեկամ մը:

«Էջմիածին» այս մասին հակիրճ տողեր նուիրած ըլլալով անոր մահուան առթիւ, այս անգամ ալ իր համակրելի կենդանագիրը զետեղելով սա՝ կ'ըսէ, «Յիշատակն արդարոց օրհնութեամբ եղիցի»:

## ԵՂԲՕՐ ՄԸ ԽՐԱՏՆԵՐԸ ԱՌ ԻՒՐ ԿՐՏՍԵՐՆ

(Շարունակութիւն Յունիսի թիւէն)

13 — Թէև վստահութիւնը չեղած հաստատութիւնն ալ խախտ կրնայ համարուիլ, սակայն, եթէ նորօրէն նկատի առնուի, պիտի հասկցուի թէ, բռնածը ուղիղ է. խնդիրը՝ այդ նուրբ կէտին մէջ խոհեմութիւնն ու ու տեսողութիւն ունենալն ու ըստ այնմ վարուիլն է:

14 — Եթէ կուզես կատարելութեան ճամբան երթալ, բոլոր կենսական օրէնքներուն ու կանոններուն, զորոնք լսելու կամ խօսելու առիթը կ'ունենաս, անթերի գործադրող եղիր. այդ մասին ջանքդ բնաւ թող չնուազի:

15 — Ամէն քայլափոխիդ մէջ ինքնավստահ եղիր և հաստատամիտ, բայց երբեք չըլլաս յանձնապաստան և փոփոխամիտ: Առաջին կերպին մէջ կրնաս առաքինութեան մրցանակ շահիլ. բայց, երկրորդը՝ մոլորութեան ու կորուստի կ'առաջնորդէ զքեզ:

16 — Սիրէ խրատը որ չի յանդիմանուիս. իսկ եթէ յանդիմանուիս իսկ, մի՛ վշտանար, զի, «ով որ յանդիմանութիւնը կ'ատէ անմիտ է», կ'ըսէ Իմաստունը:

Պրուսա ՍՈՒՔԻԱՍ

## «ԽՈԽԱՆ ԶՈՒԱՐՃՈՒԹԵԱՆ»

«Էջմիածին»ի նախորդ թուով հրատարակուած առաջնորդողին արդիւնքը ըլլալով, Պ. Գրիգոր Թովմասեան, իր ամուսնութեան առթիւ, «Փոխան Զուարճութեան» 25 տոլարի նուիրատուութիւն մը ըրաւ Երուսաղէմի որբանոցին, 12 տոլար նուիրեցին հարսին հայրը և հօրեղբայրը. հրաւիրեալներն ալ անոնց հետևեցան ու գոյացաւ 80 տոլար: Այս գումարը ղրկուեցաւ Երուսաղէմի Որբանոցին խնամակալուհի Տիկին Վիքթորիա Արշարունիի:

Փափաքելի է որ ուրիշներ ալ հետևին այս բարի օրինակին:

Յովսէփ Սարաֆեան, Նիւ Եորքէն, որ Քալիֆորնիա կը գտնուէր, Լոս Անճէլըսի մէջ յանկարծ գործողութեան մը ենթարկուելով՝ կը դարմանուի քաղաքային հիւանդանոցին մէջ:

* * *

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՐՔԵՐ Կ'ՈՒԶԵՆՔ

Շարական, Մաշթոց ով որ ունի, խմբագրութեանս թող բերէ, կամ լուր տայ «Էջմիածին»ի հասցէով: Գինը կը վճարենք ու կ'առնենք:

ETCHMIADZIN
A RELIGIOUS MONTHLY PAPER
PUBLISHED BY
REV. V. V. KASPARIAN
P. O. Box 290 Fresno, Cal.
SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR
Entered at the postoffice at Fresno as second class mail matter
VOL I, NO. 9 SEPT. 1918 PRICE 10 CENTS

## ՔԱԼԻՖՈՐՆԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆԸ

(Շարունակութիւն և վերջ)

*Պատգամաւորութեան կողմանէ Վեհափառ Կաթողիկոսին ղրկուած գրոյն հետեւեալ պատասխանը եկաւ.*

ԴԻՒԱՆ
ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ
ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
Ի Ս. ԷՋՄԻԱԾԻՆ Թիւ 1091
20 Յունիսի 1917 Ամի

Կալիֆորնիայի Հայ Եկեղեցիների Պատգամաւորների Մեծ. ժողովին,

Նորին Ս. Օծութիւնն Ազգիս Վեհափառ Հայրապետը ստանալով պատգամաւորութեանդ փետրուար 11ի զեկուցագիրը՝ Կալիֆորնիայում նոր և առանձին առաջնորդութիւն հաստատելու նկատմամբ, բարեհաճեց հետեւեալը կարգադրել յանուն Ամերիկայի Հայոց Առաջնորդ Գեր. Տէր Արսէն Ծ. Վարդապետի, որի պատճէնը կցում է գրութեանս:

Դիւանապետ՝ ՏԻՐԱՅՐ ԵՊԻՍԿՈՊՈՍ

Թիւ 1090
20 Յունիսի 1917 ամի
Ի Ս. ԷՋՄԻԱԾԻՆ

Ամերիկայի Կեդրոնական Վարչութեան Կրօնական ժողովի Նախագահ Գեր. Տ. Արսէն Ծ. Վարդապետին,

Կալիֆորնիայի մէջ առանձին առաջնորդութիւն հաստատելու նկատմամբ Կրօնական ժողովիդ տարւոյս Մարտ 3 թիւ 8-292 գրութիւնն, ինչպէս և Կալիֆորնիայի Հայոց Եկեղեցիների Պատգամաւորական ժողովի փետրուար 11ի հեռագիրն ստանալով Հայրապետական Դիւանս մանրամասն զեկոյց Նորին Սրբութեան խնդիրը:

Նորին Վեհափառութիւնն ի նկատի առնելով յարուցուած խնդրի կարեւորութիւնը, որով Ամերիկահայ հօտի կեանքի մէջ էական փոփոխութիւն է յառաջ բերում ըստ վարչական կազմութեան՝ բարեհաճեց կարգադրել այս նկատմամբ:

Ա) Յանձնարարել Կրօնական ժողովիդ այս խնդիրն ամբողջութեամբ դնել Երեսփոխանական ժողովի սեղանին վրայ,

Բ) Քննութեան առնել խնդիրը իւր յարակից բոլոր պարագաներով, ըստ վարչականին, ըստ բարոյականին և ըստ տնտեսականին և

Գ) Երեսփոխանական ժողովի եզրակացութիւնը Ձեր կարծիքի հետ ներկայացնել Նորին Ս. Օծութեան ի վերջնական տնօրինութիւն և ի հաստատութիւն:

Աչքի առաջ ունենալով խնդրի կարեւորութիւնը, Երեսփոխանական ժողովի քննութեան նիստին հրաւիրել նաև Կալիֆորնիայի Հայ Եկեղեցիների Պատգամաւորների ներկայացուցչին՝ ի պաշտպանութիւն և ի բացատրութիւն յարուցած խնդրի այլ և այլ պարագաների:

*Հայրապետական հրահանգին համաձայն, Պատգամաւորական ժողովը փափաքեցաւ տեղէս ղրկել ներկայացուցիչ մը, և որոշեց Տիար Յ. Նշկեանը. բայց երբ նա հրաժարեցաւ, ընտրեց Գ. Վահան Քիւրքճեանը Նիւ Եորքէն, որ արդէն Թրքէոյի երեսփոխանն էր: Պարոն Քիւրքճեան ընդունեց այդ պաշտօնը և Երեսփոխանական ժողովոյ մէջ պատուաւոր եղանակաւ ներկայացուց խնդիրը և արդիւնքը հաղորդեց հետեւեալ նամակաւ:*

Նիւ Եորք, Ապրիլ 10, 1918

Մեծ. Ս. Վ. Մելքոնեան,

Ատենապետ Պատգամաւորական ժողովոյ Հայ Եկեղեցեաց Քալիֆորնիոյ, Ֆրէզնօ

Մեծ. Տէր Ատենապետ

Իր ժամանակին ստացայ պատուարժան ժողովիդ Մարտ 25 թուակիր նամակը, որով զիս պատգամաւոր կը կարգէիք վերջի Երեսփոխանական ժողովոյ համար, և այն գրութիւնները՝ որք կը վերաբերին Քալիֆորնիան առանձին առաջնորդութեան վերածելու խնդրոյն:

Այդ հարցը Երեսփոխանական ժողովոյ սեղանին վրայ եկաւ ամսոյս 8ին, և գրութիւններու ընթերցումէն, և կարծիքներու փոխանակումէն յե-

տոյ՝ միաձայնութեամբ քուէարկուեցաւ որ գոհացում տրուի Պատգամաւորական ժողովին փափաքին: Ըստ այդմ՝ Երեսփոխանական ժողովը պաշտօնապէս պիտի հաղորդէ ձեզի որոշումը, և միևնոյն ատեն պիտի խնդրէ Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետէն՝ որ նկատելով այն արդարացուցիչ և ստիպողական պարագաները զորս արդէն ներկայացուցած էիք Ն. Ս. Օծութեան՝ իր հաւանութիւնը շնորհէ առանձին առաջնորդութիւն մը հաստատելու առաջարկին:

Ներփակ կը վերադարձնեմ խնդրոյն վերաբերեալ այն թղթերը զորս ինծի ղրկած էիք:

Շնորհակալութիւն կը յայտնեմ այս առթիւ ինձ վստահուած պաշտօնին համար և կատարեալ յաջողութիւն կը մաղթեմ ձեր ազգօգուտ ջանքերուն:

Մնամ յարգանօք

Վ. Մ. ՔԻՒՐՔՃԵԱՆ

*Սոյն խնդրոյն վերաբերեալ հետևեալ հատուածը կ՚արտատպենք «Արձանագրութիւն Հայոց Ազգ. Երեսփոխանական ժողովի» տետրակէն, 1918 Ապրիլ 7-8:*

## ՔԱԼԻՖՕՐՆԻԱՆ ԱՌԱՆՁԻՆ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԾԵԼՈՒ ԽՆԴԻՐ

*Քալիֆորնիոյ Հայոց Առաքելական Եկեղեցւոյ բոլոր թեմերը 1917-ին մասնաւոր պատգամաւորական ժողով գումարելով Ֆրէզնոյի մէջ, առանձին առաջնորդութիւն մը հաստատելու նպատակաւ խնդիր մատուցած են Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետին: Նորին Ս. Օծութիւնը Քալիֆորնիոյ հայ գաղութին այս փափաքը նկատի առած և 1917 Յունիս 20 թուականի և 1090 համարու դիւանական պաշտօնագրով Երեսփոխանական ժողովին յանձնած էր խնդիրը ԲԱՐՈՅԱԿԱՆ, ՎԱՐՉԱԿԱՆ և ՏՆՏԵՍԱԿԱՆ տեսակէտներէ ուսումնասիրել և արդիւնքը տեղեկագրել Սուրբ էջմիածին՝ վերջնական տնօրինութեան համար: Միևնոյն ժամանակ յանձնարարած էր որ Քալիֆորնիոյ կողմէն յատուկ պատգամաւոր մը ներկայ գտնուի Երեսփոխանական ժողովոյ նոյն նիստին և պարզէ առանձին առաջնորդութիւն մը հաստատելու պէտքերն ու անհրաժեշտութիւնը:*

*Ֆրէզնոյի երեսփոխան և Քալիֆորնիոյ մասնաւոր պատգամաւոր Տիար Վահան Քիւրքճեան խօսք առաւ և կարդաց այն ընդարձակ պաշտօնագիրը՝ որ Քալիֆորնիոյ թեմերուն կողմէ ուղղուած էր Վեհ. Հայրապետին: Յետոյ թուեց այն օգուտները՝ որ յառաջ պիտի գային առանձին առաջնորդութեան մը հաստատումէն: Ժողովը նկատի ունենալով Քալիֆորնիայի Հայոց ընդհանուր բաղձանքը և առանձին առաջնորդութեան համար հարկ եղած բարոյական և նիւթական զոհողութեանց յանձնառութիւնը, միաձայնութեամբ համամիտ գտնուեցաւ որ շուրջ երեք հազար մղոն հեռաւորութեան վրայ գտնուող Քալիֆորնիոյ թեմերը՝ առանձին Առաջնորդութիւն մը կազմեն և որոշեց ըստ այսմ տեղեկագրել Վեհ. Հայրապետին:*



## ՎԵՐԱՑՄԱՆ ԽԱՉ

*Եկեղեցւոյ նշանաւոր տօներէն մէկն է Վերացման Խաչի տօնը, որ պիտի կատարուի այս ամսոյ 29ին, որուն համար յատուկ հանդիսաւոր կարգ սահմանուած է նոյն օրը առաւօտ և երեկոյ:*

*Խաչափայտը որուն վրայ Յիսուս գամուեցաւ, մէկէ աւելի աւանդական բայց սուրբ պատմութիւն ունի: Անգամ մը Պարսկաց ձեռքը գերի ինկաւ ան, երբ նոր խոր տապանակ ունէր: Կ. Պոլսոյ Հերակլ կայսրը, եօթներորդ դարուն, անոնց դէմ մղած յաղթական պատերազմով մը ետ առնելով բերաւ Պոլիս և անտի յԵրուսաղէմ տանելով Գողգոթա լերան վրայ բարձրացուցին ճիշդ հոն ուր խաչուած էր Քրիստոս ու փառաւոր հանդէսով մը մեծարելով զայն՝ տարեկան տօն սահմանեցին: Այս է Խաչվերացի տօնին շարժառիթը:*

*Ոմանք աւելորդ կը գտնեն այն պատիւները, այն յարգանքները որ կընծայուին Խաչին, առարկելով որ աւելորդ է, կռապաշտութիւն է: Բայց մենք ոչ թէ Խաչին նիւթն է որ կը յարգենք ու կը պատուենք, այլ իբր տեսանելի յիշատակ ընդունելով զայն, անոր վրայ բեւեռուած ճշմարտութեան և փրկութեան գաղափարականը կունենանք ի մտի: Խաչին նուիրուած արարողութեանց մէջ նիւթական խաչի մը պաշտումի և երկրպագութեան գաղափար երբեք գոյութիւն չունի: Պօղոս առաքեալի քարոզած ըմբռնումէն անդին չանցնիր խաչի նկատմամբ մեր ունեցած հասկացողութիւնը և պատիւը: «Այլ ինձ քաւ լիցի պարծել, բայց միայն ի Խաչ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»: Քրիստոս ինք ալ մեծ կարևորութիւն կուտար անոր, որուն վրայ արիւնը թափեց, հոգին աւանդեց այնքան անգթօրէն տանջուելով, որուն վրայ մնաց կախուած երկար ժամեր: Ու անոր վրայէն աւելի բարձր քարոզեց, աւելի պարզ ու որոշ բացատրեց տիեզերական սիրոյ վարդապետութիւնը,*

ու իր անձին օրինակաւը համկցուց թէ, սիրոյ և ներողամտութեան սուրբ պարտականութիւնը, որ մարդիկ ունին միմիանց դէմ, ո՛ւր և ինչպէ՛ս պէտք է վերջանայ։

Այո՛, Քրիստոս ինքն ալ կարևորութիւն կուտայ անոր ըսելով, «Եւ ապա երևեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս»։ Իր երկրորդ գալստեան վրայ խօսած ժամանակ, այդ իրողութենէն առաջ, կ'ըսէ, մարդոյ որդիին, այսինքն իր նշանը, պիտի երևի ամպերուն մէջէն. և ի՞նչ է անոր նշանը եթէ ոչ խաչը, Փօղոս առաքելին պարծանքը, և ինչո՞ւ չըլլայ մեր ալ պարծանքը։ Երբ վարդին հաճելի բոյրը մեր ռնգունքը կը գգուէ, մենք կը սիրենք նաև ծառը, թէև ըլլայ փշոտ, երբ խաղողին գեղին հատիկները փայլուն մեր քիմքը կը քաղցրացնեն, խնամք և սէր կունենանք նաև զանոնք իր վրայ կրող և սնուցանող տունկին հանդէպ։ Խաչը այն ծառն է որուն պտուղը Քրիստոս՝ Քրիստոնէից սնունդն է, անոնց կեանքն է. Խաչը ծառ՝ Քրիստոս պտուղ, սա կը ճաշակենք, ան կը պատուենք ու կը յարգենք։

Ռընան, Յիսուսի Աստուածութեան հակառակորդ մատենագիրն, չկարենալով հերքել անոր Աստուածային կատարելութիւնն, Գալիլիայի բընական գեղեցկութեանց վերագրած է այն աննման նկարագիրն ու գործերըորոնք փայլած են անոր՝ Յիսուսի անձին մէջ։ Խե՛ղճ Ռնան, Յիսուսի մարմնաւորութենէն ի վեր շատ դարեր հոլոված են, շատ շուշաններ ու ծաղիկներ բուսած ու թառամած են Գալիլիոյ հովիտներուն մէջ ու բլուրներուն վրայ, շատ գալիլիացիներ կոխոտած ու անցած են անոնց վրայէն, բայց ուրիշ հատ մ՝ալ ծնած չէ Յիսուսի նման և պիտի չծնի յաւիտեան, և Ան բոլոր բոլոր մարդոց որդիներէն աւելի գեղեցիկն է, անոր այդ գեղեցկութիւնը աննըմանելի է յաւիտեան։ Ո՛չ Ռընան և ոչ անոր հետևողներ երբեք չի պիտի յաջողին նսեմացնել Անոր գեղեցկութիւնը և նուազեցնել փառքը։ Գեղեցիկ է Ան մանաւանդ Խաչին վրայ, գեղեցիկ որպէս Սէր, որպէս Յոյս և որպէս Ճշմարտութիւն։ Իր մարդասիրութիւնն է որ բևեռած է զինքն ի խաչին, և այդ խաչէն է որ կը ցոլանան օրէնք արդարութեան և շնորհք գթութեան։

«Ծառ խաչին կորուսելոցն յիմարութիւն է, այլ փրկելոցս մեզ զօրութիւն Աստուծոյ»։ Խաչին պատմութիւնը հեթանոսմիտ իմաստակներուն համար ապիկարութիւն է. անոնց համար Յիսուսի խաչին վրայ սովորական մեռնել մըն է անխօս։

Այլ նա այդ գիրքին մէջ աւելի պերճախօս է, աւելի ազդու կ'ուսուցանէ, կը հրէի կ'երթևեկէ, կը յանդիմանէ և կը խարազանէ աշխարհի բռնաւորներն ու մեծամիտ անձնասէրները։ Այնպէս որ հաւատոյ աչք ունեցողը, Խաչեալին գեղեցկութեան զննութեամբ յափշտակուողն, այդ անարգուած փայտին առջև կ'աղաղակէ. «Զիա՞րդ գեղեցիկ են ոտք աւետարանչին, համբաւողին խաղաղութեան ի վերայ լերանց»։

Ես չեմ կարող արժանաւոր գովեստ ընել խաչին, ու անկարող կըզգամ վերլուծելու գերագոյն խորհուրդը անոր։ Անհուն է Խաչին ճառը, ինչպէս անհուն է Խաչեալին սէրը, վսեմութիւնը ու գթութիւնը։ Իմաստուն թէ ագէտ, բարի թէ չար, ամենքը պէտք է փարին Խաչին, ու մանաւանդ Խաչեալին, յորում ամենայն գանձք իմաստութեան և փրկութեան ծածկեալ կան։ Որով ճշմարտապէս կը ճախրան և կը մեծանան նորա միայն, որոնք հեզ են և խոնարհ, որոնք քաղց ու ծարաւ կըզգան Աստուածային սիրոյն և հետամուտ են յագենալու և զովանալու նոյն սիրով։

## ՊԱՇՏՕՆԱԿԱՆ

### ԱԶԳ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ Բ. ՆԻՍՏԸ

Ամերիկայի Հայոց Ազգային Կեդրոնական Վարչութեան Բ. նիստը գումարուեցաւ 1918 Յուլիս 12, կէս օրէ վերջ ժամը երկուքին, Պոսթըն, 724 Ուօշինկթըն Սթրիթ, նախագահութեամբ Առաջնորդական տեղապահ Տ. Շահէ Ծ. Վարդապետի։ Բացակայ էին Արժ. Տէր Դաւիթ Հայր Տէր Աւետիսեան Կրօնական Ժողովէն, և Պ. Մուշեղ Պէրպէրեան՝ Տնտեսական Խորհուրդէն, բանաւոր պատճառներով։

### ՈՐՈՇՈՒՄՆԵՐ

Ա. —Եկեղեցականներու Պատրաստութիւն— Ժողովը նկատի առաւ Ամերիկայի Հայ գաղութին մէջ եկեղեցականներու պակասը, որու պատճառաւ շատ թեմեր կը մնան առանց հովիւի և զուրկ են հոգևոր մխիթարութենէ։ Խորհրդակցութիւններ կատարուեցան յարմար քահանացուներ գտնելու և ձեռնադրել տալու համար։ Որոշուեցաւ շըրջաբերականով մը դիմել Հողաբարձութեանց, որպէս զի իրենց շրջանակին մէջ՝ եթէ կան յարմար ընտրելիներ, անոնց անունները ներկայացնեն Կեդրոնական Վարչութեան։

Բ.— Ժամագիրք-Աղօթագիրք.— Ժողովը նը-

կատի ունենալով Եկեղեցւոյ մէջ և տանփն գործածութեան համար Ժամագիրք-Աղօթագիրքի մը պէտքը, որոշեց փութով անոր հրատարակութեան ձեռնարկել: Յիշեալ Ժամագիրք-Աղօթագիրքը պիտի պարունակէ, Հայաստանեայց Եկեղեցւոյ Ժամերգութիւնները, Ս. Պատարագի Խորհուրդը, և եկեղեցական հասարակ շարականներ, տաղեր, երգեր և աղօթքներ: Պատրաստութեան համար Յանձնախումբ նշանակուեցան՝ Գեր. Բաբգէն Աթոռակից, և Տ. Շահէ Վ. Գասպարեան: Տնտեսական մասին վրայ հսկեն Ա. Ն. Նազար, Ա. Գ. Ալբեան, և Մ. Տ. Մանուէլեան: ——

Գ.— Կտակներ.— Արձանագրուեցան Ուստր՝ Գրիգոր Միք. Տ. Գէորգեանի, և Նիւթըն Ըփըր Ֆօլս, Գէորգ Կ. Խուպօեանի կտակները, որոնց կտակակատար կարգուած էր Ազգային Առաջնորդարանը:

Դ.—Ազգային Միութիւն.— Ժողովը լսեց Ազգային Միութեան Կեդրոնական Մարմնոյն մէջ Առաջնորդարանի ներկայացուցիչներու տեղեկագրութիւնը, ու հարկ եղած թելադրութիւններն ու յանձնարարութիւնները ըրաւ անոնց:

Ե.—Բրավիտէնսի խնդիրը.— Ժողովը նկատի առաւ Բրավիտէնսի ազգայիններու կողմէ Երեսփոխանական Ժողովոյ ուղղեալ, և Երեսփ. Ժողովին Վարչութեան յղուած բողոքագիր մը եկեղեցւոյն Հոգաբարձութեան ընտրութեան և պաշտօնավարութեան նկատմամբ, և քննութեան համար նախնական քայլերն առնել յանձնուեցաւ Դիւանին:

Զ.—Առաջնորդարանի Գոյքերը.— Առաջնորդական Տեղապահ Տ. Շահէ Ծ. Վարդապետ Ժողովին ներկայացուց նախորդ Առաջնորդ Տ. Արսէն Ծ. վարդապետի հետ կատարուած թղթակցութիւնները, Հայրապետական վերջին հրահանգներու գործադրութեան համար, որոնց համեմատ Տ. Արսէն Վարդապետ պարտաւոր էր իր քով գտնուած Առաջնորդարանի վերաբերեալ գոյքերը յանձնել Տեղապահին, և իմանալով որ այս գոյքերը տակաւին չեն յանձնուած, որոշեց՝ ոեւէ կարգադրութենէ առաջ, վերջին դիմում մը ընել Տ. Արսէն Ծ. Վարդապետին և խնդրել որ մինչև Օգոստոս 10 հնազանդի Հայրապետական հրամանին և յանձնէ գոյքերը:

Որոշուեցաւ նաև նախորդ Կեդրոնական Վարչութեան անդամ Տոքթ. Փառնակ Աղամեանէն գրութեամբ մը պահանջել իր մօտ գտնուած դրամը՝ իբրև սեփականութիւն Ազգ. Առաջնորդարանի:

Է.—«Հայրենիք»ի խմբագրութեան Նամակը— Ժողովը նկատի առաւ «Հայրենիք» թերթի խմբագրութեան կողմէ Տ. Շահէ Ծ. Վ. Գասպարեանի ուղղուած երկու գրութիւններ և յարակից երեք բողոքագիրներ: «Հայրենիք»ի խմբագրութիւնը յայտարարելով որ ինք այն բողոքագիրները չէր հրատարակած, կը թելադրէր Երեսփոխանական Ժողով գումարել, հաշտութիւն գոյացնելու համար:

Ժողովը որոշեց հրապարակաւ յայտարարել, թէ Առաջնորդարանը պատրաստ է ամէն ժամանակ լսել ոեւէ պատճառաւ դժգոհ թեմերու կամ երեսփոխաններու բողոքը: Հետևաբար դարձեալ կը խնդրէ, որ ո և է թեմ եթէ տարակուսութիւն կամ խնդիր ունի, թող բաց սրտով և ուղղակի դիմէ Առաջնորդարան, կատարէ իր սահմանադրական պարտականութիւնները, և պահանջէ իրաւունքները: Առաջնորդարանը պատրաստ է նկատի առնել իրենց խնդիրները, և գործադրել՝ ինչ որ Ամերիկայի Հայոց Սահմանադրութիւնն և Ազգին Վեհ. Հայրապետին վերջին որոշումներն ու հրահանգները կը տրամադրեն:

Կեդրոնական Վարչութեանս փափաքն է նաև, որ իր գործունէութեան նկատմամբ միշտ շինարար քննադատութիւններ ըլլան Մամուլին մէջ, և ոչ թէ լռութիւն պահուի, ոեւէ նկատումով, ինչ որ օգտակար չկրնար ըլլալ Եկեղեցւոյ շահերուն, և Առաջնորդարանի գործոց բարւոք ընթացքին տեսակէտով:

Ազգիս Վեհ. Հայրապետին վճիռներն ու կարգադրութիւնները Ամերիկայի Առաջնորդարանի գործերուն նկատմամբ, յստակ և վերջնական են, և չեն կրնար մեկնութեանց ենթարկուիլ: Յիշեալ բողոքագիրները ստորագրող «Ամերիկահայ թեմական գործերու կարգադրութեան Յանձնախումբ» անուն մարմին գոյութիւն չունի Ամերիկայի Հայոց Սահմանադրութեան մէջ, իսկ Ֆրէնգլինի Հոգաբարձութիւնը Ուստրի հովուական թեմին այլ և այլ գաղութներէն մէկն է միայն, և իբր առանձին թեմ ներկայանալու իրաւունք կամ պատճառ չունի: Ոչ ոք իրաւունք ունի անտեսել Օրէնքին և Հայրապետական բացորոշ հրահանգներու, և չի ճանչնալ զանոնք: Ազգային Կեդրոնական Վարչութիւնը ցաւ կը յայտնէ այս կարգի մարմիններու և անհատներու կողմէ Եկեղեցւոյ գործերուն եղած բոլոր ապօրէն միջամտութեանց համար:

Ը.— Որոշուեցաւ Եկեղեցական Բարեգործութեան Յանձնաժողովին նոր նամակ գրել, և խնդրել իրենց գործունէութեան տեղեկատուութիւնը:

ԴԻՒԱՆ ԱԶԳ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ



## —Տ Օ Ն Ա Ց Ո Յ Ց—

ՍԵՊՏԵՄԲԵՐ

1. Կիր. Դկ. Ը. օր և Բրդ Կիրակի Աստուածածին։

3. Գշ. ԱԿ. Տօն Յովակիմայ և Աննայի՝ ծնողացն Սուրբ Աստուածածնին, և կանանցն Իւղաբերից։

8. ԿԻՐ. ԴՁ. Գրդ զկնի Աստուածածնի։ Գիւտ Գօտւոյ։

14. Շբ. ԳՁ. Տօն Նիկիոյ Սբ. ժողովոյն ՅԺԸ Հայրապետացն։

15. ԿԻՐ. ԳԿ. Դրդ զկնի Աստուածածնի։

21. Շբ. ԲԿ. Տօն Սուրբ Աստուածածնի Ծընընդեան։

22. ԿԻՐ. ԴՁ. Երդ զկնի Աստուածածնի։ Բարեկենդան խաչի։

28. Շբ. ԲՁ. Նաւակատիք։ Տօն Եկեղեցւոյ ի Նաւակատիս Սրբոյ խաչին։ Երեկոյին Նախատօնակ։

29. ԿԻՐ. ԲԿ. ՏՕՆ ՎԵՐԱՑՄԱՆ ՍՐԲՈՅ ԽԱՉԻՆ։ Տաղաւար։ Երեկոյին հանդէս խաչվերացի։ Անդաստանով։

## Ե Կ Ե Ղ Ե Ց Ա Կ Ա Ն Լ Ո Ւ Ր Ե Ր

Ամուսնացեալք

*Սարգիս Ղազարեան*
*Տիգրանուհի Ասլանեան*

*Գրիգոր Թովմասեան*
*Հռիփսիմէ Բիւրքճեան*

Հիւանդներ (Գաւառական Հիւանդանոց)

*Աստուածատուր Չաթոյեան*
*Սաթենիկ Սիմոնեան*

Մկրտութիւն

*Յ. Գինոսեանի երախան՝ Լուսիս*
*Մ. Բարաղամեանի երախան՝ Սիրանուշ*
*Մ. Բարաղամեանի երախան՝ Ներսէս*

Մահագրութիւն

*Մարտիրոս Աւետիսեան*
*Յ. Բուջիկեանի երախան՝ Սիրվարդ*

## ՔԱԼԻՖՈՐՆԻԱ ՆՈՐ ԵԿՈՂՆԵՐՈՒՆ

*Արեւելեան նահանգներէն մեծ թւով Հայե... եկած են Քալիֆորնիա գալ ու հաստատուիլ այ... շրջանակին մէջ՝ լսած ըլլալով այգեգործութեա... մէջ առաջ եկած յաջողութեան մասին։ Մենք չեն... գիտեր թէ որչափ ճիշդ է այսպիսիներու ըն... թացքը, բայց կը փափաքինք գիտնալ անոնց հաս... տատուած տեղերը ու ծանօթանալ անոնց հետ։*

## ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈՎՈՒԻՆ

*Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւան... կայ։*

*Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ։*
*Երբ գիտես թէ խռովեալներ կան։*
*Երբ գիտես թէ նորեկ կայ։*
*Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ...*

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—

—Թէլէփօն 4138- W—

## ԷՋՄԻԱԾԻՆ

Կրօնա-Բարոյական Ամսաթերթ

Հրատարակութիւն՝

ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

*Նամակ, ծրար են. ղրկուելու են վար... հասցէով։ Բաժանորդագինը կանխիկ է։*

## Տ Ա Ի Ր Ո Ս